# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.ع.م. - ت ٩١٥٠١٣
صاحبة الامتياز: السيدة عايدة سيرديان (بالايان)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B.P. 2111 Le Caire (R.A.U.) - Tél. 915013
Adresse Télégraphique: TCHAHAKIR, Cairo
Rédacteur en chef: SARKIS BALAYAN

Արտօնատէր — ԱՅՏԱ ՍԷՐՈՎԲԵԱՆ
Սեփականատէր խմբագիր — ՍԱՐԳԻՍ ՊԱԼԱՅԵԱՆ

Հիմնուած 1948ին
Տպաքանակ 3000

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 193—ՀԻՆԳՇԱԲԹԻ 17 ՕԳՈՍՏՈՍ 1967 ՀԱՏԸ ԶԵՐՈՒՔ 2,5 Եգ. Դհկ. կամ 25 Լիբ. Դհկ. عدد رقم ١٩٣ – الخميس ١٧ أغسطس ١٩٦٧


## ԱՆԽՈՐՏԱԿ ԲԱՐԵԿԱՄՈՒԹԻՒՆ

Արաբները կորսնցուցին ճակատամարտ մը, բայց կը շարունակեն պատերազմը որ, այս պարագային, արդար է, որովհետեւ կը մղուի նախայարձակին դէմ եւ պաշտպանութեանը համար Արաբներուն ազատութեան ու գերիշխանութեան։

Եթէ պահ մը լռած են զէնքերը, սակայն պայքարը ոչ միայն չէ դադրած, այլ կը շարունակուի աւելի լայն տարողութեամբ եւ կ՚ընդգրկէ նոր մարզեր։

Թշնամիին ժամանակաւոր յաջողութիւնը, բնականաբար, իր անդրադարձը ունեցաւ հոգեբանական գետնի վրայ։ Ան դառնութիւն պատճառեց որքան պաշտօնական, նոյնքան եւ աւելի ժողովրդական շրջանակներուն: Բարեբախտաբար երկար չտեւեց այս վիճակը։ Արաբները վերագտան իրենց ինքնավստահութիւնը։ Անդրադարձան որ եղածը ժամանակաւոր նահանջ մըն է՝ որ թշնամին զայն շահած էր իր անակնկալ ու յանկարծակի յարձակումով։ Կը մնայ վերամփոփել ուժերը, եւ աւելի լայն կազմակերպուածութեամբ ու առաւել վճռակամութեամբ, վերատիրանալ թշնամիէն նուաճուած դիրքերուն։

Հակառակ զինուորական գետնի վրայ արձանագրուած ժամանակաւոր նահանջին, Արաբները այս ճակատամարտէն դուրս եկան աւելի միակամ եւ Իսրայէլն ու անոր ետին կեցողները հարուածելու նոր կարելիութիւններ ձեռք ձգած։

Թշնամին բնականաբար փորձեց օգտուիլ իր յաջողութեան Արաբներուն վրայ ձգած բացասական ազդեցութենէն, անոնց միասնութիւնը պառակտելու, ժողովուրդներուն եւ անոնց իրաւ բարեկամներուն միջեւ ճեղք բանալու ու որոմ սերմանելու համար։

Շահագործել փորձելով սրտցաւութիւններն ու բարեմտութիւնները, Իսրայէլ եւ կայսերապաշտ Արեւմուտքը, գործի լծեցին իրենց Հինգերորդ Զօրասիւնը։ Ասիկա ձեռնարկեց լայն չափի քարոզչութեան մը, որուն նպատակը Արաբներուն ինքնավստահութիւնը քանդել, անոնց եւ աշխարհի յառաջդիմական ու խաղաղասէր տէրութեանց բարեկամութիւնը կասկածելի ցոյց տալ էր։

Բարեբախտաբար գետին չգտաւ այս նոր դաւադրութիւնը։ Արաբ հայրենասէր ղեկավարութիւնն ու յառաջդիմական գիտակից զանգուածները չուտով անդրադարձան վտանգին։

Հակառակ կայսերապաշտութեան եւ անոր ամէն կարգի գործակալներուն ջերմ մաղթանքին, Արաբ ժողովուրդներուն եւ աշխարհի խաղաղասէր ու ընկերվարական ճակատի ժողովուրդներուն աւանդական բարեկամութիւնը դիմացաւ փորձութեան, եւ այդ բարեկամութիւնը առաւել ամրացած ու գործունեայ է դարձած այսօր։

Այդ բարեկամութեան պահպանումն ու մշտակայ զօրացումը, երաշխիքն է արաբական վաղուան յաղթանակներուն։ Այդ բարեկամութիւնը միակ եւ ամենէն յուսալի կռուանն է Արաբ ժողովուրդներուն՝ ո՛չ միայն իրենց ազատութեան ու գերիշխանութեան պահպանման, այլ եւ յաղթանակին համար արաբական դատին՝ որուն յաջողութեանը լծուած են անոնք, աւելի քան երբեք միակամ եւ վճռական, փառքով պսակելու համար իրենց ազատագրական պայքարը։

Հայ ժողովուրդը եւ առաջին առթիւ անոր յառաջդիմական զանգուածները, որպէս հաւատարիմ զինակիցը Արաբ պայքարող եւ ազատատենչ ժողովուրդներուն, ինչպէս միշտ, նմանապէս այսօր, պատրաստ են ամէն կարգի փորձութիւններու, պատրաստ են կրելու զոհողութեան իրենց բաժինը այն պայքարին մէջ՝ որ կը մղուի ազատութեան, արդարութեան եւ ժողովուրդներու եղբայրութեան ու բարեկամութեան անունով։

«ԱՐԱՐԱՏ»

ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՀԱՄԱՐ՝
ԹԵՐԹԻՍ 194ՐԴ ԹԻՒԸ ԼՈՅՍ ՊԻՏԻ ՏԵՍՆԷ
ՀԻՆԳՇԱԲԹԻ՝ 7 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1967ԻՆ

00249

## Ա.Մ.Հ. ԵՒ ԵՈՒԿՈՍԼԱՒԻԱ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Անցեալ Հինգշաբթի կ.ե. ժամը 6.30ին, մասնաւոր օդանաւով մը Գահիրէ ժամանեց Եուկոսլաւիոյ Նախագահ Թիթօն, որուն կ՚ընկերանար կարեւոր պատուիրակութիւն մը:



ՆԱԽԱԳԱՀՆԵՐ ԹԻԹՕ ԵՒ ԱՊՏԷԼ ՆԱՍԷՐ

Նախագահ Կամալ Ապտէլ Նասէր անձամբ դիմաւորեց զայն եւ ողջագուրուեցաւ։ Ժողովուրդը Նախագահ Թիթոյի վերապահած էր ամենաջերմ ընդունելութիւն մը:

Նախագահներ Նասէրի եւ Թիթոյի միջեւ պաշտօնական խորհրդակցութիւնները սկսան Ուրբաթ, 11 Օգոստոս, Քուպպէի պալատին մէջ, որոնց մասնակցեցան երկու երկիրներու պատուիրակութիւնները։ Սկիզբը երկու Նախագահները երկու ժամուան առանձին տեսակցութիւն մը ունեցան, Նախագահ Կամալ Ապտէլ Նասէրի անձնական գրասենեակին մէջ:

Ա.Մ.Հ.ի պատուիրակութեան մաս կազմեցին փոխ Նախագահներ՝ Զաքարիա Մոհիէտտին, Հիւսէյն Էլ Շաֆէի եւ Ալի Սապրի, Ազգ. Ժողովի Նախագահ՝ Անուար Էլ Սատաթ, փոխ վարչապետ՝ Սըտքի Սուլիման, արտաքին գործոց նախագահական օգնական՝ Տոքթ. Մահմուտ Ֆաուզի, արտաքին գործոց Նախարար՝ Մահմուտ Ռիատ, Պելկրատի մէջ Ա.Մ.Հ.ի դեսպան՝ Պր. Համտի Ապու Զէյտ եւ Նախագահութեան ընդհ. քարտուղար՝ Պր. Ապտէլ Մէկիտ Ֆարիտ, իսկ Եուկոսլաւիոյ պատուիրակութիւնը կը բաղկանար փոխ Նախագահ Էտուարտ Քարտեճ, դաշնակցային խորհուրդի անդամ Պր. Վլատիմիր Փոփովիչ, տնտեսական հարցերու դաշնակցային գործադիր խորհուրդի Նախագահ Կիրօ Կլիկորովէ, արտաքին գործոց փոխ Նախարար Պր. Միշա Փավիչեւիչէ եւ Գահիրէի մէջ Եուկոսլաւիոյ դեսպան Պր. Սալքէյ Ֆելիչէ։

Երկու կողմերը կարծիքներ փոխանակեցին ներկայ կացութեան շուրջ եւ ուսումնասիրեցին Իսրայէլեան նախայարձակումը եւ անոր թողած հետքերն ու հետեւանքները:

Խորհրդակցութիւնները շարունակուեցան երեկոյեան՝ Նախագահ Կամալ Ապտէլ Նասէրի բնակարանին մէջ, ուր երկու պատուիրակութիւնները ճաշեցին:

Նախագահ Թիթօ, Կիրակի 13 Օգոստոս, Դամասկոս մեկնեցաւ, եւ ուրկէ Երկուշաբթի երեկոյեան հասաւ Պաղտատ։

Նախագահ Թիթոյի Դամասկոս եւ Պաղտատ այցելութիւնը տեւեց երեք օր, եւ երէկ, Չորեքշաբթի, կրկին Գահիրէ եկաւ ու կը շարունակէ իր բանակցութիւնները Նախագահ Կամալ Ապտէլ Նասէրի հետ։

Նախագահ Թիթոյի Սուրիոյ եւ Իրաքի մէջ ունեցած խօսակցութիւններուն նիւթը եղաւ Միջին Արեւելքի ներկայ կացութիւնը:

ՊԱՂՏԱՏԻ ՄԷՋ

## ԱՐԱԲ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԱԺՈՂՈՎԻՆ ԲԱՑՈՒՄԸ ԿԱՏԱՐԵՑ ՆԱԽԱԳԱՀ ԱՐԷՖ

Իրաքի Նախագահ Ապտէլ Ռահման Արէֆ Երեքշաբթի, 15 Օգոստոս, կ.ե. ժամը 7.15ին բացումը կատարեց արաբ. պետութեանց գանձային, տնտեսական եւ քարիւղի գործերու նախարարաց խորհրդաժողովին։ Այս ժողովի բացումին ներկայ գտնուեցան նաեւ Եուկոսլաւիոյ Նախագահ Ժոզէֆ Պրոզ Թիթօ եւ Իրաքի վարչապետ՝ հազարապետ Թահեր Եհիա:

Նախագահ Արէֆ իր ճառին մէջ, վերլուծեց արաբական հայրենիքին ճակատամարտը եւ ըսաւ. «Կայսերապաշտութիւնը Իսրայէլի վրայ կը յենու արաբական աշխարհին մէջ քարիւղային իր մենաշնորհները պահպանելու համար եւ մշտատեւօրէն շահագործելու այս հարստութիւնները ու անոնցմէ քաղելու մեծ շահեր։

«Արաբական երկիրներէն ստացած շահերով, անգլեամերիկեան ընկերութիւնները կը զինեն Իսրայէլը, հետեւաբար մեր հարստութիւններէն քաղուած շահերը մեզի դէմ ուղղուած զէնքեր կը դառնան:

«Սակայն, կայսերապաշտութիւնը սկսած է զգալ քարիւղի արտահանման կասեցումէն եւ Սուէզի ջրանցքին փակումէն յառաջացած վնասները։ Եթէ կ՚ուզենք պատւով ապրիլ, պէտք է վերատեսութեան ենթարկենք մեր դիրքաւորումը, այնպէս՝ որ մեր հարստութիւններէն մեր ժողովուրդները օգտուին։

Մեր տնտեսական զէնքերը անհարկու են եւ յաղթանակը մերը պիտի ըլլայ, եթէ զանոնք տեղին գործածել գիտնանք։ Համբերութեամբ եւ լաւ ծրագրով մը պիտի շահինք ճակատամարտը։

«Մենք խաղաղասէր եւ արդարասէր ժողովուրդ ենք: Կը պայքարինք մեր գոյութեան իրաւունքը պահպանելու համար, եւ պէտք է որ ետ մղենք կայսերապաշտական այս ներխուժումը, որուն նպատակն է մեր հարստութիւններուն տիրանալը»:

Բացման նիստէն ետք, խորհրդաժողովին պատուիրակութիւնները սկսան աշխատանքներու:

Քուէյթի պատուիրակութիւնը կ՚առաջարկէ հիմնել պատերազմական ճիգի, կառուցումներու եւ բնակեցումի յատուկ սնտուկ մը 100 միլիոն սթերլին դրամագլուխով։

Սուրիական պատուիրակութիւնն ալ ուրիշ ծրագիր մը ներկայացուց, որ չի հակասեր Խարթումի խորհրդաժողովին ներկայացուած իրաքեան ծրագրին, իսկ սուտանական պատուիրակութիւնը արաբական միացեալ շուկայի մը ստեղծման համար առաջարկ մը ներկայացուց։

